armtimes.com
the armenian times հայկական ժամանակ

# Լեւոն Տեր-Պետրոսյանն, ըստ էության, կոչ արեց քվեարկել Սերժ Սարգսյանի օգտին. Նիկոլ Փաշինյան



Սյուզաննա Պողոսյան

23/03/2017 13:59

#Նիկոլ Փաշինյան

#Լեւոն Տեր-Պետրոսյան

#ընտրություններ

«Ես շատ կուզենայի, որ այսօր մենք խոսեինք գյուղատնտեսության, արդյունաբերության ոլորտում մեր ծրագրերի մասին, բայց կա մի թեմա, որը շատ կարեւոր է, որի վերաբերյալ պետք է կիսվեմ ձեզ հետ»,- Գեղարքունիքի մարզի Ծակքար գյուղում այսօր հրավիրված հանրահավաքի ընթացքում այս մասին հայտարարեց ԱԺ պատգամավոր, «Ելք» դաշինքի համամասնական ցուցակի 3-րդ համարը ներկայացնող **Նիկոլ Փաշինյանը**:

Մանրամասնելով իր ասելիքը՝ պատգամավորն ասաց. «Հայաստանում քաղաքական իրավիճակի լրջագույն փոփոխություն է տեղի ունեցել: Ո՞րն է այդ փոփոխությունը: Երբ որ քարոզարշավը սկսվեց, մենք շատ հստակ հայտարարեցինք, որ «Ելք» դաշինքը բացառում է կոալիցիան ՀՀԿ-ի հետ: Չնայած մեր դեպքում դա բարձրաձայն ասելու կարիք չկար էլ, բայց մենք հարկ համարեցինք դա բարձրաձայն ընդգծել: Սրանից հետո մի քանի ուժեր, հասկանալով, որ շատ կարեւոր հայտարարություն է արված, իրենք էլ ասացին՝ մենք էլ չենք կազմի կոալիցիա: Հիմա, սակայն հետ պրոցեսն է տեղի ունենում»,- քաղաքական իրավիճակի փոփոխությունն այսպես բացատրեց Փաշինյանը:

Մանրամասնելով, թե ինչ նկատի ունի՝ նա առաջինը անդրադարձավ Հ1-ին ՀԱԿ առաջնորդ **Լեւոն Տեր-Պետրոսյանի** տված հարցազրույցին:

«Երկու օր առաջ ՀԱԿ առաջնորդ Լեւոն Տեր-Պետրոսյանը «Հ1»-ով  խոսեց եւ տեղի ունեցավ մի բան, որ 2008 թվականին նույնիսկ ամենավատ երազներում չէինք կարող պատկերացնել: Մարդը, ըստ էության, ուղիղ տեքստով ՀՀ քաղաքացիներին կոչ արեց գնալ եւ քվեարկել Սերժ Սարգսյանի օգտին, ինչը բացառիկ խայտառակություն է:

Ես, իհարկե, այս մասին խոսել էի դեռ 2016 թվականի հուլիսին 22-ին՝ Խորենացի փողոցում, բայց հաստատվեց, որ ըստ էության, Լեւոն Տեր-Պետրոսյանն ու Սերժ Սարգսյանը կոալիցիա են կազմել՝ Հայաստանի Հանրապետության համար նվաստացուցիչ պայմաններով ինչ-որ խաղաղության գաղափար քարոզելու:

Բայց մենք գիտենք, որ եթե խաղաղություն ենք ուզում, պետք է պատրաստ լինենք պատերազմի, իսկ Սերժ Սարգսյանն իր գործունեության ընթացքում ուղղակի ձախողել է Ադրբեջանի հետ ռազմական բալանսի պահպանումը: Վազգեն Սարգսյանի նախարար եղած տարիներից եւ դրանից հետո ամեն շաբաթ մեր քարոզչությունն ասում էր, որ ՀՀ զինված ուժերը տարածաշրջանի ամենաուժեղ բանակն է: Վերջին անգամ դուք ե՞րբ եք լսել նման արտահայտություն: ՀՀ զինված ուժերը Սերժ Սարգսյանի պատճառով կորցրել են իրենց այդ դիրքերը եւ այն, որ լկտիացել է Ադրբեջանը հիմա, ամեն օր, ամեն օր լարվածության տակ է պահում, դա Սերժ Սարգսյանի եւ կեղծ խաղաղության կոչերի հետեւանքն է:

Մենք ասում ենք՝ մեր առաջին խնդիրը հետեւյալն է. եթե մեր զինված ուժերը չլինեն այնքան ուժեղ, որ խաղաղությունը պաշտպանեն, ուրեմն մենք չենք կարող

ունենալ խաղաղություն, ինչ էլ ուզում եք զիջեք եւ այդ խաղաղության ճանապարհը, որ առաջարկվում է՝ դա պետականության կորստի ճանապարհն է»,- հայտարարեց Փաշինյանը:

Վերջինս անդրադարձավ նաեւ վարչապետ **Կարեն Կարապետյանին**՝ հիշեցնելով, որ ՀՀԿ-ն նրանից ուզում է կերտել առաջընթացի կերպար: Ըստ պատգամավորի՝ իրենից երկու ամիս պահանջվեց, որ հստակ դառնա՝ Կարեն Կարապետյանի խոստումները զրո արժեք ունեն:

«Հիշո՞ւմ եք, որ նա ասում էր, որ ամեն մարդ ինչ ուզի՝ Հայաստան կարող է ներկրել: Բայց օրեր առաջ, նաեւ իմ միջնորդությամբ (կարող է հիշեք կերոսինի հայտնի պատմությունը), պարզվեց, որ մարդուն ուղղակի դրել, չորով արգելում են կերոսինի վաճառքը, ինչ-որ կեղծ քրեական գործեր են հարուցում: Այ էս ինֆորմացիան ցույց է տալիս, որ սուտ են ասում, որ ներդրումներ են ուզում, սուտ են ասում, որ բանանի մոնոպոլիայի դեմ են պայքարում:

Կարեն Կարապետյանը երկու օր առաջ Միհրան Պողոսյանի կողքը նստած էր՝ բանանի մոնոպոլիստի: Չնայած խոստացել է՝ նա ի վիճակի չէ սովորական բանանի մոնոպոլիան ջարդել, նա ի վիճակի չէ պայման ստեղծել, որ ով ինչ ուզենա ներկրի: Ես ասում եմ՝ դա կինո է, Կարեն Կարապետյանը ոչ թե առաջընթացի, այլ հետընթացի սիմվոլն է: Գնացեք հետաքրքրվեք՝ ինչու է գազը ՀՀ հասնում 160 դոլարով, իսկ ձեր տները հասնում դրա կրկնակի գնով՝ 300 դոլարից էլ շատ:

Ինչո՞ւ է դա այդպես, որովհետեւ Կարեն Կարապետյանի հիմնարկությունը՝ Գազպրոմը (եւ դա ԱԺ-ում բացահայտվեց հենց հանձնաժողովի կողմից)... Օրինակ Ծաղկաձորում Մարիոթ հյուրանոց են կառուցել, իրենց օֆիսներն են եսիմ ոնց կահավորում եւ դրա համար վճարում ենք մենք: Տարեկան 40 միլիոն դոլարի գազ է կորում ՀՀ-ում եւ դրա համար վճարում ենք: Մարիոթ հյուրանոց են կառուցում Ծաղկաձորում, բայց մի կոպեկի ներդրում անգամ չեն անում գազի կորուստները նվազեցնելու համար:

Ինչո՞ւ չեն անում, որովհետեւ այդ կորուստները տանում են պաշտոնյաների, օլիգարխների ընդդիմադիր եւ իշխանական գազալցակայաններում փող են սարքում, դնում են գրպանները: Քանի գազալցակայան գիտեք, որ ձեզ ՀԴՄ են տալիս: (Հավաքվածները արձագանքում են՝ ոչ մի-խմբ.): Ոչ մի, ոչ մի

գազալցակայանում չեն տալիս: Բա ինչո՞ւ չեն գնում հարկային մարմինները էդ մարդկանց տուգանում: Այ դա է Կարեն Կարապետյանի գործունեության իրական երեսը»,- բացատրեց Փաշինյանը:

Վերադառնալով կոալիցիայի թեմային՝ Փաշինյանն անդրադարձավ նաեւ երեկ Սյունիքի մարզում «Ծառուկյան» դաշինքի առաջնորդ Գագիկ Ծառուկյանի հայտարարությանը, թե եթե իր առաջարկած 15 կետերը կատարվեն՝ կոալիցիա կկազմի ՀՀԿ-ի հետ:

«Երբ որ մենք ասում էինք, որ Գագիկ Ծառուկյան դաշինքը ընտրական պրոցեսին մասնակցում է Սերժ Սարգսյանի հետ կոալիցիա կազմելու համար, մեզ ասում էին՝ ճիշտ չեք գնահատում իրավիճակը: Երեկ Ծառուկյանը շատ ուղիղ չբացառեց, այսինքն՝ հնարավոր համարեց, որ իրենք Հանրապետականի հետ կոալիցիա են կազմելու»,- ասաց Նիկոլ Փաշինյանը՝ եզրակացնելով, որ եթե ժողովուրդը փոփոխություն է ուզում առաջիկա ընտրությունների միջոցով, մի լուծում կա՝ «Ելք» դաշինքին ընտրելը:

Մնացած բոլոր ուժերը, ըստ Փաշինյանի, սկսած ՀԱԿ-ից, ավարտած «Ծառուկյան» դաշինքով, պայքարում են այս կամ այն չափաբաժնով կոալիցիայի մեջ մտնելու համար:

«Միակ ուժը, որ ձեզ ասում է՝ մեզ ձայն տվեք, ուրիշ երկիր կունենաք՝ «Ելք» դաշինքն է: Եվ հետեւաբար մնացածը ձեր որոշման տիրույթում է»,- ընդգծեց նա՝ հավելելով, որ մարդիկ պետք է որոշեն՝ իրենք ողորմությա՞ն են արժանի, թե՞ պետականության:

Ըստ Փաշինյանի՝ մեր ժողովուրդը արժանի է բարեկեցության ու արժանապատվության, պատվի ու հարգանքի:

«Եվ մենք եկել ենք ձեզ ասելու, որ մենք պայքարում ենք ձեր պատվի ու արժանապատվության համար: Որեւէ մեկի մտքով չանցնի, որ կարող է 20, 30 հազար դրամով, մի կիլո բրնձով, 4 կիլո չգիտեմ ինչով ՀՀ քաղաքացի առնել: Դուք արժանապատիվ ժողովուրդ եք»,- հայտարարեց Փաշինյանը՝ հավելելով, որ եթե համաձայն են իր հետ՝ ապրիլի 2-ին պետք է գնան տեղամաս եւ վերցնելով թիվ 1 քվեաթերթիկը՝ քվեարկել «Ելք» դաշինքի ու նրա ռեյտինգային թեկնածուի օգտին:

«Էդ ժամանակ դուք կունենաք ուրիշ երկիր: Մեզ հաղթանակ է պետք այդ ընտրություններում, ձեզ հաղթանակ է պետք այս ընտրություններում: Եթե ես իմանամ, որ այդ հաղթանակը ավելի շատ մեզ է պետք՝ դուրս կգամ քաղաքականությունից: Էդ հաղթանակը ձեզ է պետք, ձեր երեխաների ապագային է պետք: Ուրեմն գնացեք, արեք այդ քայլը, որովհետեւ հերթական անգամ ձեր ձայները գողանալու են, տանեն կոխեն Սերժի տակ ու այդ պրոցեսն արդեն սկսվել է: Եթե դուք ուզում եք Սերժի օգտին քվեարկել՝ մնացած ցանկացածի օգտին քվեարկելով դուք ուղղակի կամ անուղղակի կերպով քվեարկում եք Սերժ Սարգսյանի օգտին: Միակ ուժը, որի օգտին քվեարկելով դուք ոչ կասեք Սերժ Սարգսյանին՝ դա «Ելքն» է»,- իր ելույթը եզրափակեց Փաշինյանը՝ վստահեցնելով. «Մենք ձեզ չենք քաշելու եւ տեսեք, որ դուք մեզ չքաշեք եւ Հայաստանի Հանրապետությանը չքաշեք»:

Նշենք, որ Ծակքար գյուղում ելույթներով հանդես եկան «Ելք» դաշինքի մյուս առաջնորդները եւս: «Հանրապետություն» կուսակցության ղեկավար Արամ Սարգսյանն, օրինակ, անդրադարձավ բազմաթիվ սոցիոլոգիական հարցումներին, որոնց արդյունքները նաեւ թերթերում են տպում:

«Այդ սոցիոլոգիական արդյունքների համաձայն իբր ԱԺ է անցնելու երեք ուժ. առաջինը ՀՀԿ-ն է, երկրորդը՝ «Ծառուկյան» դաշինքը, երրորդ տեղում «Ելք» դաշինքն է: Նախ ասեմ, որ այդ սոցիոլոգիական հարցումներին չեմ հավատում, հետո մեզ երրորդ տեղը չի բավարարում, ժողովուրդ, մեզ երրորդ տեղը բացարձակապես չի բավարարում»,- ասաց Սարգսյանը:

Նշենք, որ Ծակքարում տեղի ունեցած հանրահավաքը «Ելք» դաշինքի այսօր նախատեսված հանրահավաքներից առաջինն էր: Այսօր հանրահավաքներ են նախատեսվում նաեւ Մարտունիում, Ներքին Գետաշենում, Վարդենիսում, Գավառում: Ակունք գյուղում եւ Սեւան քաղաքում կիրականացվի քարոզչական շրջայց:

